

Վ. Ի. Լենինի անունը պիոներական կազմակերպությանն է շնորհվել 1924 թվականի հունվարին, իսկ մայիսին, Կարմիր հրապարակում ընդունելով Վ. Ի. Լենինի անունը, պիոներները երդում տվեցին հավատարիմ մնալ հեղափոխության առաջնորդի ավանդներին:

ԶՈՅԱ ՎՈՍԿՐԵՍԵՆՍԿԱՅԱ
ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր

# ՄՈՐ ՎԵՀՈՒԹՅՈՒՆԸ



— Մա՛մոչկա,— այսպես էր դիմում փոքրիկ Վոլոդյա Ուլյանովն իր մայրիկին՝ Մարիա Ալեքսանդրովնային:

— Մա՛մոչկա,— զնգուն ու կանչող, տագնապալի և ուրախ էր հնչում այս բառը: Եվ մայրիկը հասկանում էր, որ փոքրիկն իր օգնության, իր մասնակցության կարիքն ունի իրեն պատահած փորձանքի կամ ուրախության մեջ: Եվ շտապում էր նրա մոտ:

— Մա՛մոչկա,— մեղմ ու քնքուշ էր դիմում գիմնազիստ Վլադիմիր Ուլյանովն իր մայրիկին: Եվ այժմ օգնության հասնելու պատրաստակամություն էր լսվում այս բառում:

«Սիրելի՛ մամոչկա»,— այսպես են սկսվում,— «Ջերմորեն համբուրում եմ քեզ»,— և այսպես ավարտվում Վլադիմիր Իլյիչ Լենինի Մարիա Ալեքսանդրովնային գրած հարյուր յոթանասուն՝ բոլոր պահպանված նամակները: Իսկ գրում էր նա մորը բանտից, աքսորից, էմիգրացիայից, ամեն շաբաթ, անկախ զբաղվածությունից: Այս բառերում, այս նամակներում զուսպ ու խոր որդիական սեր, մոր առողջության համար անհանգստություն, ամեն բանի համար անսահման շնորհակալություն և հանդիպման անհագ փափագ է հնչում: Նամակներում, որոնք անցնում էին գրաքննությամբ, ամենագլխավորի մասին չէր ասվի:

Կես դարից ավելի արժանապատվությամբ կրեց մոր պատվավոր կոչումը Մարիա Ալեքսանդրովնա Ուլյանովան:

Ամուսնու՝ Իլյա Նիկոլաևիչի հետ, իմաստուն ու համերաշխ, ձևավորում էին իրենց երեխաների բնավորություն-





ները, բարոյական ու ֆիզիկական առողջությունը, իրենք էլ ազնվության ու աշխատասիրության, արդարության, գործում բարության ու լայնահոգության օրինակ տալով նրանց:

Մարիա Ալեքսանդրովնան երջանիկ կին և երջանիկ մայր էր, որքանով երջանիկ կարող էր լինել վեց ամրակազմ, համերաշխ և ընդունակ երեխաներ մեծացնող կինը: Կողքին սիրող ամուսինն էր, բարի ու հոգատար հայրը: Ընդարձակ ու հարմարավետ տուն ունեին: Կյանքը համեստ էր, բայց առանց կարիքի: Տունը լիքն էր գրքերով ու երաժշտությամբ, պարտեզը՝ ծաղիկներով: Ընտանիքը ամբողջ նահանգի հարգանքն էր վայելում ժողովրդական դպրոց-ճրագների համար, որ Իլյա Նիկոլաևիչ Ուլյանովն էր վառել համարյա յուրաքանչյուր գյուղում:

Հույս կար, որ ծերությունը խաղաղ ու լուսավոր էր լինելու: Սակայն կյանքի հիսունմեկերորդ տարում դժբախտությունների ու փորձանքների տարափ տեղաց Մարիա Ալեքսանդրովնայի վտիտ ուսերին: Չար ճակատագիրը մոլեգնորեն փորձության էր ենթարկում փոքրիկ կնոջ արիությունն ու տոկունությունը:

1886 թվի հունվարին հանկարծամահ եղավ Իլյա Նիկոլաևիչը, և Մարիա Ալեքսանդրովնան մնաց վեց երեխաների հետ, որոնցից ոչ մեկը դեռ ինքնուրույն կյանք չէր սկսել: Իր անձնական, կանացի վիշտը խոր թաքցրած, ոտքը դեռ երբեք պետական հիմնարկությունների շեմից ներս չըդրած՝ մայրն սկսեց թոշակի և ընտանիքի համար տոհմական ազնվականություն ձևակերպելու հոգսերով զբաղվել: Սա երեխաների համար ճանապարհ էր հարթելու դեպի համալսարան: Իլյա Նիկոլաևիչը ազնվականության իրավունք էր ստացել երկար տարիների անբասիր ծառայության համար, բայց այդպես էլ դեռ չէր ձևակերպել այն:

Անցավ հոգսառատ մի ամբողջ տարի և նոր սոսկալի, և նույնքան անսպասելի, փորձանք եկավ նրա գլխին: Պետերբուրգում սովորող ավագ զավակները՝ Աննան ու Ալեքսանդրը, բանտարկվել էին թագավորի դեմ կատարված մահափորձին մասնակցելու համար: Որպես մայրական սրտի աղաղակ են հնչում Մարիա Ալեքսանդրովնայի՝ կայսրուհու անունով հղած խնդրագրի բառերը. «Որպես մոր, Ձերդ մեծությանը միանգամայն հասկանալի է իմ սոսկալի դրությունը, այն հուսահատությունն ու վիշտը, որ անհնար է արտահայտել արտասուքով, պատմել բառերով...»

Կայսրուհին չպատասխանեց. հինգ որդիների այս մայրը գայլի սիրտ ուներ: «Օ՛, արքա, աղաչում եմ, խնայեցեք որդիներիս: Ուժ չունեմ դիմանալու այս վշտին, և չկա աշխարհում ավելի անեղ, ավելի դաժան վիշտ, քան իմն է»,— աղերսում է Մարիա Ալեքսանդրովնան: Բայց թագավորն անեղ էր ու դաժան: Սաշային մահապատժի ենթարկեցին:

Գերեզման անգամ չկար, որ նա ողբար վրան: Մտերիմներն ու հարազատները երես թեքեցին: Այժմ արդեն Մարիա Ալեքսանդրովնան ոչ թե իսկական պետական խորհրդականի՝ քաղաքացիական գեներալի այրի էր նրանց համար, այլ «պետական հանցագործների» մայր:

Տունը վաճառված էր... Սրբապատկերները վանք հանձնված... Մայրը կորցրել էր հավատը աստվածային ու արքայական ողորմածության նկատմամբ, հրաժարվել էր նրանցից:

Մոր հենարանն ու ընտանիքի ավագն այժմ Վլադիմիրն էր: Այն օրերին, երբ սիրելի եղբոր դատավճիռն էին կայացնում, նա գիմնազիայի ավարտական քննություններն էր հանձնում: Արիության քննությունները: Եվ ոսկե մեդալ ստացավ:

ԸՆՏԱՆԻՔԸ տեղափոխվեց Կազան... Մայրն իր մեջ ուժ գտավ և հաջողեցրեց դստեր Սիբիր աքսորվելը փոխարինել Կոկուշկինո գյուղը արտաքսելով: Բայց, ասում են, փորձանքը փորձանք է բերում: Ալեքսանդրի մահապատժից յոթ ամիս անց, բանտարկվում է Կազանի համալսարանի ուսանող Վլադիմիրը: Իշխանությունը նրան նույնպես Կոկուշկինո է աքսորում: Հիմա արդեն երկու որդիներն են աքսորավայրում և ոստիկանության հսկողության տակ: Երկու և կես տարի Մարիա Ալեքսանդրովնան համառորեն պայքարում է, որ Վլադիմիրին բարձրագույն կրթություն ստանալու հնարավորություն տրվի: Պետերբուրգ է գնում: Չի աղերսում: Պահանջում է: Եվ որդու համար իրավաբանական ֆակուլտետի քննությունները էքստեռն հանձնելու թույլտվություն է ստանում:

Թվում էր, թե ձախորդությունները նահանջում են: Բայց 1891-ի մայիսի 8-ին՝ Ալեքսանդրի մահապատժի չորրորդ տարելիցի օրը, մահը խլում է ընտանիքի սիրելուն՝ տասնիննամյա շնորհաշատ Օլգային:

Քրոջ հիվանդության ու թաղման օրերին Վլադիմիրը համալսարանի ավարտական էքստեռն քննություններ էր հանձնում, արդեն ընտրած լինելով հեղափոխականի ուղի: Դիպլոմը գերազանցությամբ պաշտպանեց: Բայց նա չէր կարող հեռանալ վշտաբեկ մորից ու նրա հետ Սամարա է մեկնում:

Փոքրակազմ, վտիտ կինը ունեցավ ոչ միայն ուժ դիմանալու, այլև խորաթափանցություն հասկանալու, որ որդու համար հեղձուկ է Սամարան, նա ձգտում է դեպի հեղափոխական Պետերբուրգ: Դատապաշտպանի գործունեությունը նրան չէր գրավում, նրան ոչ թե առանձին մարդկանց դատական պրոցեսներն են հետաքրքրում, այլ ողջ ժողովրդի ճակատագիրը: Մայրը հասկացավ, որ այսուհետև որդիների գործը իր կյանքի գործն է դարձել և նրանց հետ երկար ու դժվարին ճամփա ընկավ:

Իր որդիների տասնհինը բանտարկություն է տեսել Մարիա Ալեքսանդրովնան: Պատահում էր, որ բանտում էին լինում միանգամից չորսը: Եվ այն ժամանակ մայրը ամեն օր բանտ էր գնում չորս կապոց ձեռքին, ժամերով պատուհանի մոտ հերթ էր կանգնում՝ տեսակցության սպասելով ընդունարաններում: Անդադար խնդրագրեր էր գրում:

Ուսումնասիրում էր ցարական իրավաբանության խորամանկորեն հյուսված լաբիրինթոսները: Չէր աղերսում: Հիմնավորված պահանջում էր ազատ արձակել որդիներին բանտից: Դատախազի «Ահա ձեր դաստիարակության պտուղները» հանդիմանությանը արժանապատվությամբ պատասխանում էր. «Ես հպարտ եմ իմ զավակներով»:

Միայն ոստիկանության գիշերային ներխուժումներին չէր կարողանում վարժվել, և, երբ տանում էին որդիներից մեկնումեկին, մոր աչքի առաջ Սաշայի պատկերն էր հառնում, և նրա ճակատագիրը։

Բայց, ցնցումից ուշքի գալով, նա նորից համառ պայքար էր սկսում հանուն որդիների կյանքի, առողջության ու ազատության։

Նա խելոք միջնորդ էր ու փորձված կոնսպիրատոր և արիաբար օգնում էր այն գործին, որին ծառայում էին իր բոլոր որդիները։ Թերթում ես նրա խնդրագրերը ու տեսնում, թե ինչպես որդիների հետ միասին արիանում էր մայրը։

Մոր ջանքերի շնորհիվ աքսորավայր մեկնելուց առաջ Վլադիմիր Իլյիչին հաջողվում է երեք օր Պետերբուրգում և երկու օր Մոսկվայում մնալ սոցիալ-դեմոկրատների հետ խորհրդակցություն անցկացնելու և կազմակերպական ու տակտիկական հարցեր քննարկելու համար։ Մարիա Ալեքսանդրովնան կարողացավ թույլտվություն ստանալ, որ Վլադիմիր Իլյիչը աքսորավայր մեկնի ոչ թե էտապով, այլ իր հաշվին։

Երբ 1900-ին «Իսկրա» թերթի համար հենակետեր ստեղծելու նպատակով Վլադիմիր Իլյիչին պետք եղավ մեկնել Նիժնի Նովգորոդ, Սամարա, Սիզրան և Ուֆա, Մարիա Ալեքսանդրովնան Պոդոլսկից Պետերբուրգ գնաց ու հայտնեց ոստիկանությանը, որ հարսին՝ Նադեժդա Կոնստանտինովնային, այցելելու է գնում Ուֆա և տկարության պատճառով կարիք ունի, որ որդին՝ Վլադիմիր Իլյիչը ուղեկցի իրեն։ Եվ ստացավ այդ թույլտվությունը։

ՄԱՅՐԸ միշտ այն որդու հետ էր լինում, որին ինքն ավելի էր պետք։ Կամավոր աքսորական էր որդու՝ Դմիտրիի հետ Պոդոլսկում, դստեր՝ Մարիայի հետ Վոլոգդայում։ Իսկ դեպի բանտերը տանող քանի-քանի արահետներ էր նա տրորել։ Եվ որտեղ էլ որ գտնվեին նրա զավակները, ավյունով, բարի խորհուրդներով ու զուսպ փաղաքշանքով լի մայրական նամակներ էին թռչում դեպի նրանց։ Նամակները շատ են։ Դրանք պահպանվել են խնամքով։ Սակայն կորված են նրա Վլադիմիր Իլյիչին գրած նամակները։ Հնարավոր է, որ մոր տողերի արանքում քույրերն ու եղբայրը Վլադիմիր Իլյիչին բան են գրել գաղտնագրով։ Իսկ այդպիսի նամակները վերականգնելուց հետո անխուսափելիորեն ոչնչացվում էին։

Մեծագույն հուզմունքով ես դիտում մոր ձեռքի կենդանի հետքը։ Նամակի կիսաթափանց թերթերի վրա նուրբ ձեռագրով, համարյա առանց ջնջումների (այսպես էր գրում և Վլադիմիր Իլյիչը) այս նամակները զարմացնում են պայծառ լավատեսությամբ, նրանցում ո՛չ դժգոհություն, ո՛չ էլ հիվանդության բողոք կա, նրանք քաղցրալուր են, բայց ոչ սենտիմենտալ, և... ոչ մի նամակում որևէ հիշատակում չկա Իլյա Նիկոլաևիչի, Սաշայի, Օլյայի մասին։ Բայց չէ՞ որ մոր սիրտը կեղեքվում էր նրա ողջ կյանքի ընթացքում։ Եվ զավակներն էլ չէին դիպչում այս վերքերին։ Հոգեկան զարմանալի ներբանկատություն։

Թերթերից շատերը դարչնագույն սպիներով են ծածկված... Մոր այս նամակները չարչարել են բանտային

գրասենյակներում, դրանք ծաղկված ու մտրակահարված են լայնքով ու երկայնքով, սրանք թունավոր թթվի հետքերն են, որով երևան են հանում գաղտնագիրը:

«Լավ զբոսնեցինք,— գրում է Մարիա Ալեքսանդրովնան բանտում գտնվող կրտսեր դստերը:— Դաշտային ծաղիկների մեծ-մեծ փնջեր հավաքեցինք. շատ կուզեի իմ փունջը քեզ ուղարկել, բայց, ցավոք, այդտեղ ծաղկեփունջ չեն ընդունում»:

Այո: Բանտում ծաղիկ չէին ընդունում: Բայց հենց այս տողերն են առատորեն թթվով ողողված: Թուղթը այրվել է, իսկ մոր խոսքերի ժանեկազարդ նախշը ապրում է մոխրակույտի վրա:

Մարիա Ալեքսանդրովնան ժամերով նստում էր գրադարանում, փնտրելով այնպիսի գիրք, որը կսատարեր ու հոգեպես կհարստացներ դստերը: Բանտ է ուղարկում «Մյոլլերի մարմնամարզությունը», անգլերենի ու ֆրանսերենի դասագրքեր, վառ գույների բրդի կծիկներ: «Ձեռագործ անելիս երկար չնստես: Լավ կլինի քայլես բանտախցումդ: Ի՞նչ մեծության է խուցդ: Քանի՞ քայլ է»,— հարցնում է նա դստերը:

Խցերում նրա զավակների կողքին իրենց ընկերներն են: Եվ մայրն այնքան կարկանդակ է թխում, որ բոլորին բաժին հասնի:

Նրանում է վաթսունը... Յոթանասունը... Բայց դեռ հեռու է ծերությունը: Չի կարելի հանձնվել, երբ բոլոր երեխաները պայքարի մեջ են: Նա գիտե ինչով են ապրում նրանք, ինչն է նրանց հուզում:

«Վոլոդյան, երևի, նոր գրական գործ է մտմտում: Մանյային խնդրում է գրքեր, վիճակագրական ժողովածուներ ճարել: Այդ մասին մի քանի նամակ ենք ստացել նրանից վերջին ժամանակներս»,— գրում է նա ավագ դստերը՝ Աննային, 1909 թվի դեկտեմբերի 6-ին, իսկ 1910-ի ապրիլի 24-ին հաղորդում է, որ գիշերը «մեզ մոտ «հյուրեր» եկան, տակնուվրա արին ամեն բան և, իհարկե, ոչինչ չգտան, բայց Մանյային տարան»:

Մարիա Իլյինիչնային հանցանշանների բացակայության հետևանքով երեք օրից ազատեցին, և մորից ուրախ լուրը Լիպիտինո գյուղից դեպի Աննան է թռչում.

«... Ես քունս լավ առա, վաղուց այսպես չէի քնել: Ընդհանրապես հիմա ինձ հրաշալի եմ զգում, բոլոր հուզմունքներից հետո հանգստանում եմ հոգով... Այսօր առավոտյան մոտակա անտառն էինք գնացել, նստել էի այնտեղ ուղղակի հրճվանքի մեջ: Օդն անտառում հոյակապ է, հատկապես տոթ ու փոշոտ Մոսկվայից հետո»:

1912 թվի մայիսի 8-ին Մարիա Ալեքսանդրովնան տագնապալի նամակ է հղում Սիզրան, Աննայի ամուսնու՝ Մարկ Տիմոֆեևիչի եղբորը:

«Մայիսի 7-ի լույս 8-ի գիշերը ոստիկանությունը ներխուժեց: Պահնորդական բաժնից թուղթ ներկայացրին Մարկին, Աննային ու Մարուսյային բանտարկելու պահանջով, նույնիսկ եթե ոչ մի դատապարտելի բան չընգտնվի... Մարուսյայի մոտ «Զվեզդա» թերթի մի համար կար: 15 հոգի էին եկել, խուզարկում էին գիշերվա ժամը 12-ից մինչև առավոտյան ժամը 6-ը, ամեն բան տակնուվրա արին, կահույ-

քի ծածկոցները հանեցին, վառարանները քանդեցին, փնտրում էին խոհանոցում, ձեղնահարկում։ Անցյային տարան։ Նախազգուշացրեք Մարկին»։

Այս անգամ բանտարկեցին նաև դստերը՝ Մարիային։ Նրան դատապարտեցին աքսորի՝ Վոլոգդա և մայրը գնաց նրա ետևից...

Ուլյանովների ընտանիքը համերաշխ էր ապրում։ Դրամն ընդհանուր էր։ Յուրաքանչյուրը կիսում էր իր վաստակը եղբայրների ու քույրերի հետ։ Բայց հաճախ ոչ մի վաստակ չէր լինում։ Բանտարկված էին լինում։ Մարիա Ալեքսանդրովնայի թոշակն, իհարկե, չէր բավարարում։ Այդպիսի դեպքում նա վերցնում էր գրիչը։ Պատմվածքներ էր թարգմանում գերմաներենից ու ֆրանսերենից, տպագրում թերթերում և ամսագրերում։

Լրացավ նրա յոթանասունհինգ տարին... 1910 թիվն էր։ Համարյա երեք տարի չէր տեսել մայրն իր Վլադիմիր որդուն, որն ստիպված էր արտասահմանում՝ էմիգրացիայում ապրել։ Ռուսաստանում նա որոնվում էր. «Գտնելու դեպքում անհապաղ ձերբակալել և բերել Ս. Պետերբուրգ քաղաքի 27-րդ բաժանմունքը»։

ՄԱՅՐՆ ու որդին կարոտել էին իրար։ Վլադիմիր Իլյիչը առաջարկում է հանդիպել Ստոկհոլմում. սա ամենամոտ կետն է Ռուսաստանին։

Վլադիմիր Իլյիչը գրում է.

«Սիրելի՛ մամոչկա... Սեպտեմբերի 4-ին, հին տոմարով, այսինքն՝ 17.9 նորով, Ստոկհոլմի նավահանգստում սպասում եմ ձեզ։ Երկու սենյակ մեկ շաբաթով 17—24, 9 Ստոկհոլմում ինձ համար կվարձի ընկեր... Ամուր գրկում եմ ձեզ։ Մինչ մոտալուտ տեսություն։ Քո Վ. Ու.»։

Ստոկհոլմ։

Սա քառասունամյա որդու և յոթանասունհինգամյա մոր վերջին հանդիպումն էր։

Քսաներեք տարի էր անցել ավագ որդու՝ Ալեքսանդրի մահապատժի օրից։ Քսաներեք տարի այն օրից, երբ նա լսել էր որդու վերջին խոսքը դատարանում։ Մինչև վերջ չէր լսել։ Հուսահատությունը կտրատել էր սիրտը, նա լքել էր դահլիճը։ Եվ այնուհետև երբեք չէր գնում ո՛չ 1905 թվի հեղափոխության միտինգներին, ո՛չ էլ ժողովներին, որտեղ ելույթ էին ունենում իր որդիները։ Չէր կարողանում։ Իսկ այժմ խնդրեց Վլադիմիրին իրեն էլ տանել Շվեդիայում ապրող էմիգրանտ բոլշևիկների ժողովին։ Եվ գնաց համախոհի, հավատարիմ ընկերոջ իրավունքով։

Մարիա Ալեքսանդրովնան լսում է Վլադիմիրի զեկուցումը կուսակցության գործերի դրության, Ռուսաստանում հեղափոխության վերելքի անհրաժեշտության մասին և հասկանում, որ Ալեքսանդրն էլ էր դեպի մեծ նպատակը գնում, բայց գնում էր դեռ խարխափելով, շատ բան նա դեռ չէր տեսնում։ Իսկ Վլադիմիր որդին հաստատուն լայն քայլերով է գնում, կարծես ձեռքին պայծառ ջահ ունի բռնած։ Ալեքսանդրը մտածում էր հաղթել ցարիզմին մի բուռ հերոսների հետ, իսկ Վլադիմիրը միլիոններ է տանում իր ետևից։ Մայրը հասկացավ, որ այս որդին կհասնի նպատակին։ Եվ որ մոտ է այդ նպատակը...

Ու նորից է ճամփա ընկնում։ Մյուս որդիների մոտ։ Նա դեռ շատ է պետք նրանց...

Իմ ձեռքին է Մարիա Ալեքսանդրով-

նա Ուլյանովայի անձնագիրը։ Քառասունմեկ գրանցում կա այնտեղ։ Մարիա Ալեքսանդրովնան կյանքի վերջին քսան տարվա ընթացքում քառասունմեկ անգամ փոխադրվել է բնակարանից բնակարան, քաղաքից քաղաք։ Եվ չէր տառապում դրանից... «Շարունակ թափառում եմ վերջին ժամանակներս, բայց դրանք դատարկ բաներ են»,— գրում է նա դստերը։ Ուրախանում էր, եթե տան մոտ մի կտոր հող էր լինում, սկսում էր ծաղիկ աճեցնել։ Որքան ծաղիկ է տնկել նա Սիմբիրսկում, Կոկուշկինոյում, Ալակաևկայում, Սամարայում, Սաբլինոյում, Պետերբուրգի մոտ, Վոլոգդայում... Եվ ինքն էլ մշտապես տեղավորվում էր այն սենյակում, որն ավելի մոտ էր մուտքի դռանը, որպեսզի վտանգին դիմավորի առաջ ինքը, կարողանա նախազգուշացնել որդիներին։

Խաղաղ ու հանգիստ ծերություն չունեցավ այս մայրը, թերևս ընդհանրապես ծերություն չունեցավ։ Ուշադիր նայեք նրա լուսանկարին. որքա՜ն բարություն, իմաստություն, կյանքի նրկատմամբ աշխույժ հետաքրքրություն կա աչքերում։

Մարիա Ալեքսանդրովնան ոչ մի անպտուղ ապրած օր չունեցավ։ Նա իր որդիների հետ միասին կարողանում էր դեպի առաջ նայել, նրանց հավատարիմ օգնականն էր և ժամանակ էր գտնում երաժշտություն, լավ գիրք վայելելու, ծաղիկներին ու արևին նայելով ուրախանալու համար։ Մինչև իր վերջին ժամը ապրում էր որդիների հետաքրքրություններով։ Վախճանվեց կյանքի ութսուներկուերորդ տարում՝ 1916 թվի հուլիսի 12(25)-ին ամառանոցում, երբ այգում խնձորն էր հասունանում, հասնում էր հաճարը և երբ մինչև հեղափոխության հաղթանակը միայն ամիսներ էին մնում։

ԽԻԶԱԽ մայր... Վեհ մայր... Հրաշալի ռուս կին... Նշանակալից է նաև այն, որ Մարիա Ալեքսանդրովնա Ուլյանովայի ծննդյան օրը համարյա համընկնում է մարտի 8-ի տոնին։ Մարիա Ալեքսանդրովնան ծնվել է 1835 թվի մարտի 6-ին։ 147 տարի առաջ։ Բայց իր որդիների և նրանց բարոյական սկզբունքների հետ մեզ մոտ է եկել Ապագայից։

Բոլոր մայրերի մայրը։

Դաղստանի ժողովրդական բանաստեղծ, սոցիալիստական աշխատանքի հերոս Ռասուլ Համզատովը ոգեշընչված տողեր է նվիրել Մորը իր «Պահպանեցեք մայրերին» պոեմում։ Այս պոեմն ու 1979 թվի օգոստոսի 26-ի «Կոմսոմոլսկայա պրավդայում» հրապարակված նրա հոդվածը ջերմ արձագանք գտան։ Շատ ընթերցողներ հանդես եկան առաջարկով՝ Մորը կենդանի հուշարձան՝ Մայրական փառքի ազգային պտղատու զբոսայգի ստեղծել։ Եվ հիմնադրել այն Մարիա Ալեքսանդրովնա Ուլյանովայի ծննդյան 150-րդ տարեդարձի առթիվ, նրա կենսական սխրանքի, մայրական սխրանքի պատվին, որը մարդկությանը տվել է նրա հանճարին՝ ԼԵՆԻՆԻՆ։

*Թարգմ.* ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

Նկ. ԱՐԱ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ



# Կատուն

Արահետը
Ինձ ու կատվին առած հետը,
Դեմ էր առել ջրափոսին...
— Կատու՛,— ասի,—
Աջում ջուր է, ձախում ջուր է,
Մեր արահետն հապա ու՞ր է...
Ա՛յ տես՝ տախտակ ջրի վրա,
Թե երկուսով փորձենք անցնել,
Շատ է բարակ՝ չի դիմանա,
Իսկ դու այդպե՛ս,
Ոտաբոբի՛կ,
Թե որ թրջես դունչ ու տոտիկ,
Վայ թե մրսես-հիվանդանաս,
Իսկ ես հագիս երկարաճիտ կոշիկ
ունեմ,
Ապահով եմ...—
Կատուն լսեց, լսե՛ց, լսե՛ց,
Նայեց ջրին, նայեց փայտին
Ու ասես ինձ նոր հասկացավ.
Պոչը ցցեց,
Այն կողմ անցավ:
Ես ժպտացի, ձեռքով արի,
Եւ ուզում եք հավատացեք,
ուզում եք ոչ,
«Շնորհակալ եմ»— ասաց կատուն՝
Խոնարհելով գլուխ ու պոչ...

ՕԼՅԱ ՅԱԿԻՄԵՆԿՈ
8-րդ դասարան
Կույբիշև

Թարգմ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻ

# ՋՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
բանասիրության դոկտոր

## 45. ԲԱՅԻ, ՕԺԱՆԴԱԿ ԲԱՅԻ ԵՎ ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ՀԱՅՈՑ ԼԵԶՈՒՆ ԻՆՉՊԵՍ Է ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄ ԺԱՄԱՆԱԿԸ

Կյանքում շատ կան զարմանալի բաներ, որոնց վրա չենք զարմանում այն պատճառով միայն, որ վարժվել, ընտելացել ենք դրանց: Ահա, օրինակ, ժամանակը՝ ամենից զարմանալին. ինչպե՞ս է լինում, որ մեր ապրած ամեն մի պահն իսկույն դառնում է անցյալ, իսկ հաջորդ պահը դեռ ապագա է: Այսպես գալիս ու անցնում են վայրկյանները վայրկյանների, րոպեները րոպեների, ժամերը ժամերի, օրերը օրերի, ամիսներն ամիսների, տարիները տարիների, դարերը դարերի ետևից, այսպես հյուսվում է մարդկության բազմադարյան պատմությունը: Նույնպես և ամեն մեկիս կյանքի պատմությունը, որ այլ բան չէ, քան ժամանակի միավորների՝ ժամերի, օրերի, տարիների մի որոշ քանակ:

Մենք ապրում և դրա մասին չենք էլ մտածում, բայց ահա մի երեխա, որ առաջին անգամ միտք է արել դրա շուրջը, հարցրել է մորը. «Մայրի՛կ, ու՞ր են գնում օրերը»: Իսկապես, ու՞ր են գնում:

Ոչ ոք չի կարող ասել, թե երբ է այդ հարցը ծագել նախնադարյան մարդու գլխում, բայց հաստատ կարելի է ասել, որ և՛ ծագել է, և՛ ստիպել նրան ըմբռնելու ժամանակը: Շատ և շատ դարեր են պետք եղել, որ նա հասկանա, իմաստավորի ժամանակը և տարածությունը, գտնի դրանք չափելու միջոցները ու միավորները և կայունացնի լեզվի մեջ:

Այդ ընթացքը սկիզբ է առել հեռավոր այն ժամանակներից, երբ մարդկային հարաբերությունների զարգացումն առաջադրել է դրա պահանջը, երբ մարդն այլևս չէր կարող ապրել «հենց այնպես», երբ պետք է եղել հասկանալ, թե այս կամ այն գործողությունը կատարվե՞լ է, կատարվու՞մ է, թե՞ պիտի կատարվի:

Խոսքի ո՞ր մասը պետք է իր վրա առներ այդ պարտականությունը: Իհարկե, այն մասը, որը ցույց է տալիս գործողություն, այսինքն՝ բայը: Եվ դա հասկանալի է. չէ՞ որ մեր կյանքը կատարվող գործողությունների անվերջանալի մի շղթա է՝ քնում ենք, վեր ենք կենում, քայլում ենք, աշխատում ենք, կարդում ենք, գրում ենք, սովորում ենք, մտածում ենք, երազում ենք, ցանկանում ենք... Բայն է, որ պետք է արտացոլի այդ ամենը՝ հնարավոր բոլոր ժամանակներով, բոլոր կերպերով, բոլոր ե-

րանգներով։ Ահա ինչու բայը բոլոր լեզուներում խոսքի մասերից ամենաճկունն է։ Հայերենում բայն ունի քերականական ավելի շատ կարգեր, քան խոսքի մասերից որևէ մեկը՝ և՛ եղանակ ունի, և՛ ժամանակ, և՛ դեմք, և՛ թիվ, և՛ կերպ, և՛ սեռ։ Բայը մեն-մենակ կարող է նախադասություն կազմել. մի հատիկ բառ՝ գնաց, և դա ցույց է տալիս և՛ դեմք (երրորդ դեմք), և՛ թիվ (եզակի), և՛ ժամանակ (անցյալ կատարյալ)։ Բայը կարող է նաև հոլովվել, ինչպես գոյականը, և խոնարհվել, որ միայն բային է հատուկ։

Բայն է խոսքին կյանք, ուժ, կենդանություն պարգևում, բայի շնորհիվ է, որ մենք արտահայտում ենք մեր ցանկությունները, հոգեվիճակը, վերաբերմունքը, մեր հուզումները, բայի միջոցով է, որ մենք խնդրում ենք ու հրամայում, զայրանում ու զմայլվում, ցանկանում ու համոզում։ Ահա ինչու բայի եղանակները կոչվում են սահմանական, ըղձական, պայմանական, հարկադրական, հրամայական։ Հայոց լեզվում բայն ունի մեր ցանկությունները արտահայտելու բոլոր նրբերանգները։ Կարող ենք ասել՝ «Գնա տես», «Կգնաս կտեսնես», «Գնաս տեսնես», «Ինչ կլինի գնաս տեսնես», «Պիտի գնաս տեսնես», «Պիտի որ գնաս տեսնես», «Եթե միայն գնայիր տեսնեիր»,— ինչքա՜ն նուրբ տարբերություններ կան այս արտահայտությունների միջև՝ խնդրանքից մինչև հարկադրանք, մեկից մյուսը տանող նրբին անցումներով։

Եվ ամենից կարևորը՝ մենք բայի միջոցով ենք կազմակերպում ժամանակը, ի հայտ բերում մեր պատկերացումները ժամանակի մասին։

Ամեն մի ընթացք, շարժում, զարգացում, ամեն մի գործողություն կատարվում է ժամանակի և տարածության մեջ, դրանցից դուրս անհնար է որևէ գործողություն պատկերացնել։ Եվ միշտ, բոլոր դեպքերում կարևոր է իմանալ գործողությունը կատարվե՞լ է, կատարվու՞մ է, թե՞ պիտի կատարվի։ Հենց սրանք էլ ժամանակի երեք գլխավոր ձևերն են՝ անցյալ, ներկա և ապառնի։ Ասում ենք գլխավոր, որովհետև սրանցից ամեն մեկն իր մեջ շատ նրբություններ է թաքցնում։ Ասում ենք՝ կարդաց և հասկանում ենք կատարված գործողություն, այդպես էլ կոչում ենք՝ անցյալ կատարյալ։

Բայց մի՞թե անցյալին չի վերաբերում, երբ ասում ենք՝ «կարդացել է», «կարդում էր», «կարդալու էր», «պիտի կարդար», «պետք է որ կարդացած լիներ», «պիտի որ կարդալու լիներ»։ Այո, վերաբերում են անցյալին, բայց որքա՜ն մեծ են տարբերությունները սրանց միջև։

Կամ մի՞թե ապառնի ժամանակը նկատի չունենք, երբ ասում ենք՝ «կըկարդա», «կարդալու է», «պետք է կարդա», «պիտի որ կարդա», բայց սրանցից յուրաքանչյուրն ունի իր տարբերիչ կողմը, իր երանգը՝ հաստատականից մինչև ենթադրականը։

Դուք, իհարկե, քերականության դասագրքերից գիտեք այս բոլոր անվանումները, մեր նպատակն է ցույց տալ, թե ժամանակը վերլուծաբար ներկայացնելու մեջ որքան մեծ են բայի հնարավորությունները հայոց լեզվում։

Ամենից լավ դա երևում է ներկա ժամանակում։ Հիմա տեսեք, թե այդ

«ներկա» կոչեցյալն ինչպիսի շերտեր է պարունակում իր մեջ: Մի կողմից համարում ենք ներկա, մյուս կողմից ասում մի բան, որ դարեր առաջ է կատարվել՝ «Եվ այսպես Արշակ թագավորը հիմնում է Արշակավան քաղաքը»: Այսպիսի ներկան կոչվում է պատմական, որին շատ մոտ է հեքիաթային ներկան՝ «Լինում է չի լինում մի ծիտ: Մի անգամ էս ծտի ոտը փուշ է մտնում...» Սա դեռ բավական չէ, առածական ներկա էլ կա՝ «Կուշտը սովածին մանր է բրդում»:

Իսկ ինչպե՞ս կոչենք այն ներկան, որ արտահայտում է շարունակ կրկնվող գործողություն՝ «Ամեն տարի նույն օրը շրջանավարտները հանդիպում են միմյանց»: Սա էլ սովորույթի ներկա է կոչվում:

Եվ առավել «տարօրինակը»՝ գոյություն ունի նաև ապառնի ժամանակի ներկա, ահա խնդրեմ՝ «Վաղը չէ մյուս օրը գնում ենք թատրոն»:

Բոլոր լեզուներում բայը նույն պարտականությունն է կատարում՝ գործողություն է ցույց տալիս, բայց տարբեր լեզուներում՝ տարբեր կերպով: Կան լեզուներ, ինչպես հայերենը, անգլերենը, որոնք ժամանակ կազմելու համար օժանդակ բային վերապահում են շատ կարևոր դեր: Ռուսաց լեզուն, օրինակ, չունի օժանդակ բայ և դրա կարիքն էլ չունի՝ идет—գնում է, шел—գնում էր, пойдет—կգնա, пошел—գնաց, пришел—եկավ և այլն: Ռուսերենի նախածանցները շատ զորեղ միջոցներ են՝ ընդունակ արտահայտելու գործողության ամենատարբեր կերպերը: Արաբերենը ևս բայը խոնարհում է առանց օժանդակ բայի՝ քուտիբա—գրված էր, քատաբա—գրել է, յաքտուբու—կգրի և այլն: Լեզուներ էլ կան, որոնց մեջ վճռող դերը պատկանում է բառերի դասավորությանը, ինչպես, օրինակ, չինարենում՝ վու բու պա տա—ես նրանից չեմ վախենում, տու բու պա վո—նա ինձնից չի վախենում: Բառերի դասավորությունը ռուսերենում ևս ունի շատ էական նշանակություն: Ասենք, мать любит дочь նախադասության մեջ միայն բառերի դասավորությունից կարելի է հասկանալ, թե ով ում է սիրում:

Հայերենում բայիմաստը հասկանալու համար բառերի դասավորությունն այդպիսի նշանակություն չունի. «Մայրը սիրում է աղջկան», «Աղջկան սիրում է մայրը», «Աղջկան է սիրում մայրը», «Մայրն է սիրում աղջկան»,— բոլոր այս նախադասություններն էլ մոր վերաբերմունքն են ցույց տալիս աղջկա հանդեպ, միայն թե դրանք ունեն տարբեր երանգներ՝ պատասխան տալով տարբեր հարցերի՝ մայրն աղջկան ի՞նչ է անում, ո՞վ է սիրում աղջկան, ու՞մ է սիրում մայրը, ո՞վ է սիրում աղջկան:

Ինչի՞ շնորհիվ է, որ մենք ոչ միայն անշփոթ հասկանում ենք բայիմաստը, այլև այսքան երանգներ ենք դնում նախադասության մեջ: Օժանդակ բայի շնորհիվ, մի հատիկ «է» հնչյունի: Զարմանալի բան է այս օժանդակ բայը՝ ցատկում է տեղից տեղ և ամեն անգամ նոր իմաստ է հաղորդում խոսքին: Այդպես էլ մյուս օժանդակ բայերը: Ահա, օրինակ, «Նրա՛նք են հիմա խըլում իրավունքը», «Նրանք հիմա՛ են

խլում իրավունքը», «Նրանք հիմա խլու՛մ են իրավունքը». այդ թափառական օժանդակ բայը երեք անգամ փոխեց տեղը և ամեն անգամ մի նոր իմաստ տվեց նախադասությանը:

Ճիշտ է, թափառական են օժանդակ բայերը, բայց ոչ թե անդեկ ու անառագաստ. հայտնվում են ճիշտ այնտեղ, ուր հարկավոր են, այսինքն՝ շեշտվող, նախադասության հիմնորոշ բառի կողքին: Ահա, օրինակ, «Երեկ նրանք այդ արձա՛նն են տեսել թանգարանում», «Երեկ նրանք թանգարանու՛մ են տեսել այդ արձանը», «Նրանք երե՛կ են տեսել այդ արձանը թանգարանում»: Օժանդակ բայը մեկ այն է շեշտում, թե նրանք ի՞նչ են տեսել, մեկ՝ որտե՞ղ են տեսել, մեկ էլ՝ ե՞րբ են տեսել: Բայերն ազատորեն խաղում են խոսքի մեջ՝ մեր լեզվին տալով արտասովոր ճկունություն, խոսքը դարձնելով կենդանի, խաղացկուն, գույներով ու նրբերանգներով հարուստ, ժամանակի ամենանրբին տարբերությունները հայտնի դարձնող: Ահա ինչու բայերի և օժանդակ բայերի ոճական հնարավորություններն այնքան շատ են հայերենում: Պետք է միայն կարողանանք լավ օգտագործել այդ հնարավորությունները շարահյուսության մեջ:






# ՔՄԱՀԱՃ ՀԵՌՈՒՍՏԱԴԻՏՈՂՆԵՐԸ

Կենդանաբանական այգու վանդակներում նստած կապիկները տառացիորեն չգիտեն ինչ անեն ձանձրույթից, հատկապես վատ եղանակներին, երբ բացակայում են գոնե չնչին զվարճություն պատճառող այցելուները:

Նկատելով այս, անգլիական Թվայկըրոս քաղաքի կենդանաբանական այգու տնօրեն Մոլլի Բեդհեմը որոշեց օգնել կապիկների ժամանցին և կարգադրեց վանդակներում գունավոր հեռուստացույցներ դնել:

Հենց առաջին դիտումները շատ հետաքրքիր դուրս եկան. պարզվեց, որ շիմպանզեների համար ամենահետաքրքիրն այն հաղորդումներն են, որոնցում շարժումը շատ է՝ կովբոյական ֆիլմեր, բռնցքամարտի մրցումներ, մուլտիպլիկացիա:

Նկատելի ձանձրույթ են պատճառում կենդանիների մասին հաղորդումները: Սակայն Մոլլի Բեդհեմը հույսը չի կորցնում: Նա մտադիր է ֆիլմ նկարահանել իր կենդանաբանական այգու կապիկների կյանքից, համոզված, որ էկրանի վրա սեփական ծամածռությունները տեսնելով, կապիկները կուզենան տեսնել նաև այլ կենդանիների:

# «Ամառային արձակուրդների իմ ամենահետաքրքիր օրը»

**Պատմում են Երևանի № 174 դպրոցի 4-րդ Բ դասարանի մի խումբ աշակերտներ**

*ՌԱԶՄԻԿ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

## ԳԱՅԼԸ

Ես ամառային արձակուրդներն անցկացրել եմ Աշտարակի շրջանի Արուճ գյուղում, պապիկիս տանը: Հետաքրքիր օրեր էին: Մեկ օրը, որ երբեք չեմ մոռանա:

Պապիկս գնում էր սար ոչխար պահելու: Խնդրեցի՝ ինձ էլ հետը տարավ: Մութը նոր էր ընկել, երբ հոտի մեջ անսովոր խլրտում ընկավ, ոչխարները սկսեցին դեսուդեն նետվել:

— Էդ ու՞մ շունն է մտել հոտի մեջ,— ասաց պապս՝ ցույց տալով հոտի մեջ ծփացող գայլին:

— Գայլ է, պապի՛կ,— ասացի ես ու զգացի, որ մի տեսակ սարսռում եմ: Մտաբերեցի, որ գազանանոցում տեսածս գայլերն էլ այդպես մոխրագույն են ու շանը շատ նման:

— Գայլ է,— հաստատեց պապս և պատվիրեց մտնել մեր կողքին գտնըվող փոքրիկ անձավը, որտեղ վատ եղանակներին հովիվներն էին պատըսպարվում: Իսկ ինքը լրագրերը, որոնցով մեր ուտելիքների պաշարն էինք փաթաթել, վառեց և գլխավերևում թափահարելով հարայ-հրոցով վազեց գայլի կողմը: Գայլը փախավ:

Պապիկս մի քիչ էլ վազեց, մինչև որ նա աչքից աներևութացավ: Երբ ետ եկավ, տեսա, որ շատ է տխրել: Ասաց, որ գայլը հասցրել է ոչխարներից մեկի կոկորդը կրծել-սպանել:

Մենք կրակը թեժացրինք՝ վախենալով, որ գայլը էլի կգա: Բայց լավ էր, այդպես էլ չերևաց:

*ՎԻԼԼԻ ՄԵԼԻՔ-ՂԱԶԱՐՅԱՆ*

## ՄՏՐՈՒԿԸ

Իսկ ես այս տարի, ամառային արձակուրդներին, 20 օր ապրել եմ անտառապահի տանը: Հայրիկիս, մայրիկիս և եղբորս հետ գնացել էինք Նոյեմբերյանի շրջանի անտառները: Հայրիկս անտառապահին խնդրեց, որ մի քանի շաբաթ թույլ տա ապրելու նրա երկու խրճիթներից մեկում: Անտառապահը բարի մարդ էր՝ համաձայնեց:

Ես, եղբայրս և հորեղբորս երկու տղաները, որոնք Նոյեմբերյանից միա-

ցել էին մեզ, երազանքով նայում էինք անտառապահի ձիերին: Երեքն էին: Մեկը մի սիրուն մտրուկ ուներ, որը միշտ վազում էր մոր ետևից պոչը ցցված: Մենք շատ էինք ուզում մտրուկին շոյել, բայց վախենում էինք անտառապահը բարկանա կամ մայր ձին աքացի տա: Հայրս տեսնելով, որ ձիերից աչք չենք կտրում, անտառապահից նստելու թույլտվություն խնդրեց: Հետո հայրս ու անտառապահը ինձ ու եղբորս նստեցրին ձիերից մեկի վրա, հորեղբորս տղաներին՝ մյուսի: Երրորդ ձիուն էլ անտառապահը նստեց ու գընացինք անտառը տեսնելու:

Ես ու եղբայրս առաջին անգամ էինք ձի նստում և մեզ ավելի մեծացած էինք զգում՝ համարյա տղամարդ:

Անտառի բացատում եղնիկ տեսանք, գեղեցիկ մեծ-մեծ եղջյուրներ ուներ: Հենց մեզ տեսավ՝ փախավ:

Հաջորդ օրը բոլորս միասին մի դույլ մոշ հավաքեցինք և երեկոյան մեր սարքած օջախի վրա մայրս մուրաբա եփեց:

Բայց մի բան էլ եղավ այդ օրերին, որ ամբողջովին մթագնեց անտառից ստացած մեր վայելքը:

Մի երեկո անտառապահը ինձ ու եղբորս պատվիրեց մայր ձիուն տանել կապել իր տեղը: Մենք հետո այդ տեղը դժվարացանք գտնել և ձիուն կապեցինք մի պատահական ծառի:

Հաջորդ օրը մեր բարի անտառապահը շատ էր բարկացել: Նույնիսկ մեզ վրա գոռգոռաց: Գայլը գիշերն հարձակվել, հոշոտել էր մտրուկին, իսկ մայր ձին իր սմբակներով պաշտպանել չէր կարողացել, որովհետև ամուր կապել էինք ծառից:

Ես ու եղբայրս հաճախ ենք հիշում մտրուկին: Մենք ամեն ինչ կտայինք, որ այդ դեպքը պատահած չլիներ:

*ԱՇԽԵՆ ՄԽՈՅԱՆ, ՆԱԻՐԱ ՍԱՀԱԿՅԱՆ*

# ԱՐՋԸ

Միասին էինք հանգստանում Հանքավանի «Հասմիկ» ճամբարում: Շատ հետաքրքիր միջոցառումների ենք ներկա եղել, բայց ամենազվարճալին երևի «արջի» հետ հանդիպումն էր:

Երբ մեզ արշավի տարան Արջաղբյուր, ճամբարի պետ ընկեր Մուրադյանը աղբյուրի մոտ արջի հետքեր ցույց տվեց:

Մինչ այդ մեզ պատմել էին, որ արջերն այդ աղբյուրից են ջուր խմում և հաճախակի հայտնվում են ճամբարի մոտերքում, ոչ ոքի վնաս չեն տալիս:

Հանկարծ, աղբյուրից մի քիչ վեր, թփուտների միջից մրթմրթոց ու խշրտոց լսվեց և երևաց... արջը:

— Ահա և արջը,— հանգիստ, տեղից չշարժվելով, ասաց ընկեր Մուրադյանը:

Մի քանիսը վախից գունատվեցին: Աղջիկներից շատերը ճչացին ու փախան: Երբ արջը մրթթին հանելով մոտեցավ, պարզվեց, որ մեր ավագ ջոկատավարն է՝ ընկեր Մուրադը:

Ընկեր Մուրադին տեսնելով բոլորս սկսեցինք ծիծաղել, բայց շատերիս ծիծաղը մի քիչ վախեցած ու ակամա էր:

Այդ օրվանից մեզ սկսել է թվալ, թե արջի հետ հանդիպելը այնքան էլ սարսափելի չէ, թեկուզ և ամենախսկական:

Գրի առավ՝ Մ. ՈՍԿԱՆՅԱՆԸ


Սուրեւցած ...
Մեարապիկիս փորրիկ ... կար
Հանկուշիկին անտեղ ... Ճվերն ու մ տար
Բայց Սեղիկը բնած... տվեց.
Տանն էր, բնած... ճվերն ու մ տար
Նրան էլ մի երազ տվեց.
Այդ երազում պապը ժպտաց,
Այսպես ասաց.
— Մյուս տարի քնով չանցնես,
Որ ճվերից չզրկվես:

# ՄՐԳԵՐՈՎ ԼԻ ՄԻ ՏՈՊՐԱԿ

ԳԱՌՆԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆ

Ամեն գիշեր Նոր տարվա
Փոքրիկ Սոսի բարձի տակ
Մեկը թաքուն դնում էր
Մրգերով լի մի տոպրակ:

— Մայրի՛կ ջան, ինձ ճի՛շտն ասա,
Այդ տոպրակն ո՞վ է դնում:
— Ձմեռ պապը, սիրելի՛ս,
Երբ դու քնած ես լինում:

Փոքրիկ Սոսը որոշեց
Արթուն մնալ գիշերն այդ,
Շատ ճիգ թափեց, բայց քունը
Վրա հասավ աննկատ:

Առավոտյան արթնացավ,
Ձեռքը տարավ բարձի տակ,
Նորից դրված էր այնտեղ
Մրգերով լի մի տոպրակ:

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

# ՆԱՄԱԿ

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

Ձմե՛ռ պապի, Ծուշանն եմ ես,
Տես, նստել եմ արթուն,
Որ քեզ նամակ գրեմ, ասեմ՝
Ստացել ենք նոր տուն:

Ավանում ենք ապրում արդեն:
Երբ անտառից դու գաս,
Մտի՛ր մեր նոր տունն էլ, խնդրեմ,
Հանկարծ չմոռանաս:

Դուռը բաց է, մեր լույսը՝ վառ,
Արի՛, արի՛, արի՛...
Ձմե՛ռ պապի, դու անպատճառ,
Մե՛զ էլ բեր նոր տարի:

# Ես հավարած եմ

ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

## 3.

Ուրուրները ինձ շատ են խեղճացնում։ Մնացը պնդում է, թե ամենից դժվարը իր գործն է, բայց տեսնողն զգում է, որ ամենից շատ ես եմ չարչարվում։ Առավոտյան վաղ արթնանալուն վարժվեցի, ճանապարհ գնալ-գալը խաղուպար է, հատկապես ավանակով։ Ցուրտը ինձ միշտ էլ հաճելի է։ Սիրում եմ սպորտային տաք զգեստներ հագնել ու թափառել սառը օդում։ Վարժվեցի թռչնանոցի ներսը ամեն օր մաքրել-ախտահանելուն։ Առաջին օրը տառապանք էր թվում։ Ծանր է թռչնաղբի և թրջած կերի հոտը, բայց դիմացա։ Կեր բաժանելու ժամանակ թռչունները հանգիստ չեն տալիս։ Թափով թռչում են ուսերիս ու գլխիս, դեմքըս ու ձեռքերս չանգռում, արյունոտում, ցավ պատճառում։ Սովորեցի նաև դրա ձևը։ Մի ձեռքով փայտն էի թափահարում, մյուսով շաղ տալիս ցորենն ու գարին։ Ոչ հեշտությամբ, բայց ընտելացա։ Իսկ ուրուրնե՞րը...

Մնացը գոռում է.

— Արու՛ս, հասի՛ր, տարա՛ն...

Վազում եմ, վազում, «հո՛պ-հո՛պ» ծղրտում, քար շպրտում, իսկ նա մագիլները խրում է հավի մարմնի մեջ ու թափով օդ բարձրանում։ Եթե ուրուրը փոքր է, հավի ծանրությանը երկար չի դիմանում, մագիլները թուլանում են ու բաց է թողնում զոհին։ Խղճահարությունից աչքերս խոնավանում են ու ինձանից անկախ արցունքներս հոսում։ Խեղճ հավերը անդամահատված գետին են ընկնում ու ճչալով թպրտում։ Մնացը, դանակը պատրաստ, անմիջապես մորթում է, իսկ Սաթոն նույնքան արագ տաք ջրի մեջ փետրահան անում։ Ուրուրները հաճախ հավին հասցնում են ժայռի գլուխ, երկար ու կեռ կտուցով հենց մեր աչքերի առաջ հոշոտում։ Ինչքան գոռում ենք, բղավում, բանի տեղ չեն դնում։ Մինչև շնչակտուր հասնում եմ ժայռին, քար շպրտում, նա արդեն կշտացած է լինում, մնացորդները թողնում է քարի վրա, թևին տալիս ու թռչում։

Մնացը մի օր առաջարկեց.

— Արո՛ւս, դու ջահել ես, որ ուզենաս, կբարձրանաս ժայռի գլուխ։

— Հետո ի՞նչ անեմ,— հարցնում եմ,— ամբողջ օրը նստե՞մ այնտեղ։

— Հա՛,— պատասխանում է,— ուրիշ ելք չունենք։

Ճիշտն ասած, ժայռի գլուխ բարձրանալուց չեմ վախենում, բայց ինձ թվում է դրանով հավերին չեմ փրկի։ Չնայած այդպես է թվում, սակայն Մընացին չեմ առարկում և անխոս գնում եմ դեպի ժայռը, մագլցելու հարմար տեղ փնտրում։ Մնացը հետևում է ինձ։ Դեղնուկը կողքիցս չի հեռանում։ Ինձ հետ վերև է նայում, ինձ հետ երկընքում ուրուրներին որոնում, ինձ հետ վազում։ Ես գոռում եմ, նա հաչում է։ Մի խոսքով, իմ օգնականն է դառել։

Դեղնուկը հետս գալիս է, բայց չի կարողանում բարձրանալ։ Իսկ ես մեծ զգուշությամբ, քարերից ու թփերից բռնելով, բարձրանում եմ։ Գագաթին չեմ հասնում, բայց եթե ձեռքիս մի երկար ձող լինի, ուրուրին կքշեմ։ Մնացին հայտնում եմ կարծիքս։

— Նորից իջի՛ր,— առաջարկում է,— ձողը վերցրու՛, բարձրացի՛ր։

— Ձողը ձեռքիս չեմ կարող, պետք է ուրիշ բան մտածել։

— Լավ, դու էդպես մնա՛, ես կմտածեմ։

Ամբողջ օրը արձանացած մնում եմ

այնտեղ կանգնած, իսկ Մնացը երևի մտածում, բայց ճնարը չի գտնում: Երեկոյան կողմ, սառած մատներով շոշափում եմ քարերն ու թիերը, մեծ դժվարությամբ իջնում:

Հաջորդ օրերին նույնն է կրկնվում, մինչև Սաթոն զայրանում է Մնացի վրա:

— Ի՞նչ ես խեղճ երեխային տանջում: Ջհանդամը, թե երկու ճավ էլ ավել կուտեն, բա որ երեխան քարից ընկնի՞:

— Չեմ ընկնի,— ուզում եմ Մնացին պաշտպանել:

— Կընկնես, բալա՛ ջան,— Վարսենիկն է մյուս կողմից,— որ ընկնես, ի՞նչ պատասխան տանք հորդ ու մորդ:

Օրերը շատ են կարճացել, մութը շուտ է վրա հասնում: Մնացը դժգոհում է, որ գիշերները երկար են, արթնանում ու էլ չի կարողանում քնել, մենակությունից սիրտը պայթում է, վարիչին խնդրելու է մի տղամարդ ընկեր ուղարկի ֆերմա, թե չէ մի օր իրեն մեռած կգտնենք, մեղք է իր կինը, իսկ ամենից շատ ինքն է մեղք:

— Վարիչն ասում է՝ ձեր ֆերմային հինգ հոգի չի հասնում,— Մնացի գանգատներին պատասխանում է Սաթոն:

— Թող ձեզանից մեկին ազատեն, տղամարդ նշանակեն:

— Հնարավոր չի: Տղամարդը չի կարող կնոջ գործ կատարել:

— Արածդ ի՞նչ է,— Մնացը անգնում է ծաղրական տոնի,— գարի չե՞ս բաժանում:

— Գարի է, արի դո՛ւ բաժանիր:

— Մի՛ գիշեր իմ փոխարեն մնա, հետո մեծ-մեծ խոսիր:

Ես ու Վարսենիկը չենք խառնվում վիճաբանությանը: Ես Դեղնուկի ականջներն եմ շոյում, Վարսենիկը ցերեկվա հավաքած փետուրներն է մշակում: Իսկ տունդարձի ճանապարհին Սաթոն խորհրդավոր ասում է.

— Մեզանից մեկին թող ազատեն, Մնացը մեղք է, երևում է, վախենում է մենակությունից: Մարդ է, հո քար չի՞...

Հասկանալի է, եթե ազատելու լինեն, անպայման ինձ կազատեն: Է՛հ, կարծես երկնային թագավորությունից են ազատելու: Ամբողջ օրը խելահեղ վազքի մեջ եմ, ժամանակ չեմ ունենում գիրք բացելու, ձեռքերս ճաքճքել ու կոշտացել են: Թո՛ղ ազատեն:

Բայց երբ տուն եմ հասնում ու Արաքսն սկսում է դպրոցի ու գյուղի նորությունները հայտնել, տխրում եմ, երբ մտածում եմ, թե այլևս տնից դուրս չեմ գալու, չեմ քայլելու դաշտերի ազատությամբ միջով, չեմ տեսնելու թռչնանոցն ու քարաժայռերը, ինձ տանջող արծիվներին, որոնց այդ պահին նույնիսկ կարոտում եմ: Ինձ կազատեն, ու Սոնան չարախնդորեն կասի՝ էդ ինստիտուտն էլ շուտ ավարտեցիր, ուրեմն իսկապես ընդունակ ես, ես էլ կասկածում էի...

Լավ էր շատ էի հոգնած, շուտ քնեցի:

Առավոտյան վարիչը ֆերմա եկավ, բայց ոչ մի խոսք չեղավ կանանցից որևէ մեկին տղամարդով փոխարինելու մասին: Ուրուրների համար Մնացը տրտնջաց: Աղասին ծիծաղեց՝ գործիդ անունն ի՞նչ է, կանանց կողքին նստելու տեղակ, գնա հանդերը, ուրուրների հետ լեզու գտիր:

Ասաց, ձվերը լցրեց քթոցի մեջ ու գնաց:

Մի քանի օր ժայռի վրա պահակություն անելուց հետո զգացի, որ կարող եմ նստած տեղս կարդալ-գրել: Գրքերըն ու տետրերը գոտկատեղս խրեցի ու հաջորդ օրերին այդպես բարձրացա Արծվաքար: Շատ գոհ էի վիճակիցս: Թեև քամին ամբողջ ուժով վազվզում էր շուրջս, ցուրտ չէի զգում, որովհետև տաք էի հագնվել: Շոր որքան կամենայի, կարող էի ժայռի գլուխը բարձրացնել: Դրա հնարը ես գտա, ոչ թե Մնացը: Նրա էշի վզի պարանը բավականին երկար էր, Վարսենիկի ու Սաթոյի ավանակների պարաններն էլ միացրինք, ալպինիստի նման վերևից քաշում էի, ինչ հարկավոր էր, նույնիսկ ուտելիք:

Խորասուզվեցի գրքերի մեջ, խորասուզվեցի խնդիրների մեջ, մոռացա, թե որտեղ եմ գտնվում, թվաց նորից դպրոցում եմ, տաք դասարանում ընտած խնդիրներ ու վարժություններ եմ վճռում, պատասխանները բոլորից շուտ ստանում և ուրախ-զվարթ ձեռքս տընկում հենց ընկեր Ֆեդյանի քթի տակ,

որովհետև առաջին նստարանին էի նստում: Եթե նույնիսկ առաջին նստարանին չնստեի, նա առաջ ինձ էր դիմում, գլուխն առանց դասամատյանից բարձրացնելու.

— Աբգարյան, եկ գրատախտակի մոտ, նոր խնդիրը վճռիր:

Ուսուցչիս ձայնը ականջներիս այնպես հստակ հնչեց, կարծես կանգնած էր կողքիս: Մի անմեկնելի ու շատ քաղցր, մի անանուն, բայց շատ անուշ զգացում պարուրեց էությունս: Գլուխս բարձրացնում եմ գրքից, նայում հորիզոնը երիզող կապույտ հեռուներին:

Աչքերիս մշուշը միանգամից ցրվում է: Մնացը չգիտեմ որ թփուտից է հայտնվում:

— Պա՜հ, պա՜հ, տուններս քանդվեց: Ծնե՜ր, հասե՜ք...

Ուրուրները խմբով էին հարձակվել, տարբեր տեղերից, ասես խոսքը մեկ արած, ուզում էին մեզ շփոթեցնել: Տարան, իրենց ճիրանների մեջ խեղդեցին մեր ամենաթևավորներին: Ես ժայռից իջա և խելագար ճչոցներով վազեցի նրանց ետևից: Գնում էի՝ աչքերս վերև ուղղած, անընդհատ ընկնելով ու բարձրանալով, աշխարհի ամենանաչար անեծքները տալով աշխարհի բոլոր չարերին: Հավերի փետուրները, քամու բերանն ընկած, պարելով իջնում էին, բզկտելով սիրտս: Ոռնում էի, բղավում ու վազում: Ես գիտեի, թե նրանք որտեղ են իջնելու՝ թռչնանոցից հեռու փոքրիկ ժայռերի վրա կամ ցաքուտներում: Երեկոյան կողմ Մնացը հաճախ է շրջում այդ վայրերում՝ գլուխներ ու ոտքեր հավաքում: Ուրուրները հոշոտում են մինչև վերջին մսակտորը, միայն գլուխն ու ոտքերն են թողնում: Երբեմն ես եմ գնում: Հիմա էլ եմ գընում, բայց ի՞նչ եմ անելու, չգիտեմ: Դեղնուկը ինձանից առաջ է ընկել, շուտ-շուտ վերև է նայում, իսկ ուրուրները շատ են հեռացել: Նրանց հասնելու այլևս ոչ մի հույս չկա: Հուսահատ կանգնում եմ, նայում, հեծկլտոցը խեղդում է ինձ և անզորությունից ընկնում եմ գետնին:

Գոմռոց եմ լսում: Շուրջս եմ նայում և ի՞նչ. երեք հսկայական գամփռ, խակական հովվաշներ, նստել, լեզուները հանել, ասես հսկում են ինձ: Նայում եմ նրանց բերանի բացվածքին ու ահից քարանում: Հետո բնազդով հիշում եմ, որ հովվաշները չեն հարձակվում նստած կամ պառկած մարդու վրա, չեն հաչում կանանց ու երեխաների վրա: Ես տեղումս քարանում եմ, ամեն պահ սպասելով, որ կհարձակվեն, ինձ կհոշոտեն, ինչպես ուրուրները հավերին: Հետո մտածում եմ, թե ինչու են ուրուրները վնասում հավերին: Չէ՞ որ երկուսն էլ թևավորներ են, իրար նըման, չնայած հավերը ուրուրների թըռիչքի չափը չունեն:

— Փալա՜շ, Փալա՜շ, Փալա՜շ... — հեռավոր կանչ եմ լսում: Հետո կանչը մոտենում է դանդաղ, քայլ առ քայլ: Ասես հավերժություն է անցնում, մինչև որ կանչը ոտնաձայներ է դառնում, մարդկային իրական ձայն, խոսք ու բառ,— ա՜յ, սատկե՜ք դուք, ի՞նչ եք վեր ընկել... Պա՜հ, էս ո՞վ է, էս ի՞նչ է անում էստեղ... Արուսյա՞կ...

Վազգենն է:

Հինգերորդ դասարանում էինք: Աշխարհագրության ժամին դպրոցի դիրեկտոր ընկեր Աղայանը ներս բերեց Վազգենին և զգուշացրեց.

— Վազգենը ձեզանից մեծ է, հիվանդության պատճառով մի քանի տարի չի հաճախել դպրոց, շատ բան մոռացել է, դժվար կլինի նրա համար: Դուք պետք է օգնեք նրան, ոչ թե ծաղրեք:

Հետո Վազգենին նստեցրին իմ կողքին, որպեսզի օգնեմ: Բայց օրերն անցնում էին, նա ոչ մի բառ չէր փոխանակում ո՜չ աշակերտների, ո՜չ ուսուցիչների հետ: Լռելյայն հրաժարվում էր նաև իմ օգնությունից: Մի օր էլ երկրորդ դասից գնաց ու այլևս չվերադարձավ: Հետո լսեցինք, որ հովիվների հետ սարերն է բարձրացել: Այն ժամանակ նա 16—17 տարեկան էր, մեզանից 4—5 տարով մեծ:

Գամփռները մի փոքր հեռանում են:

— Ուրուրների ետևից էի վազում,— ասում եմ մեղավորի նման,— նրանք որ այդպես շարունակեն, ֆերմայում հավ չի մնա:

Վազգենը նայում է ինձ ու ժպտում, ինչպես փոքրիկ երեխային:

— Էլ չվազես, մեկ է՝ չես հասնի:



Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

— Գիտեմ չեմ հասնի, գոնե տեղը իմանամ, սատկած հավերի գլուխն ու ոտքերը հավաքեմ, որ Մնաց քեռին տանի անասնաբուժարան։

— Էդ մեկը հասկացանք, բայց լավ կլինի, որ Մնաց քեռին ինքը զբաղվի այդ գործով։ Հանդի մարդ է, լա՛վ գիտի չոլի լեզուն։

— Հավերի խնամքն ու պահպանությունը բոլորիս գործն է, բոլորս էլ հավասարապես պատասխանատու ենք, Մնաց քեռին ամենածանր գործն է կատարում՝ գիշերային պահակությունը հեշտ բան չի։ Դու ուրուրներին տեսա՞ր։

— Տեսա։ Նրանց բների տեղն էլ գիտեմ, նրանց պապերի ու տատերի տեղն էլ գիտեմ։ Ուզո՞ւմ ես ցույց տամ։

— Ուզում եմ։

Ես Վազգենի դեմքին չեմ նայում, իսկ նա երևի ժպտում է։

— Գնա՛։ Գնա հանգստացի՛ր։

Վազգենի մեղմությունը հանգստացնում է ինձ։ Եվ նոր եմ տեսնում, որ

Դեղնուկը չկա: Աջ ու ձախ եմ նայում, շփոթված որոնում իմ շանը:

— Բա՞ն ես կորցրել,— հարցնում է:

— Շունս չկա: Նա փոքրիկ է, դեղնավուն, անունն էլ Դեղնուկ:

— Իմ շները նրան քշել են, հիմա թռչնանոցում կլինի, մի՛ վախենա: Շները շատ խելոք կենդանիներ են:

Նրա աչքերը փայլում են բարությամբ:

— Դու այնպես լա՜վ էիր սովորում,— մեղմ ու զգացված տոնով շարունակում է,— փոքրիկ աղջիկ էիր, թովռան: Ո՞նց էիր խնդիրներ լուծում: Մինչև հիմա զարմացած եմ:

Սպասում եմ նրա հաջորդ բառերին, բայց նա լռում է, հովվափայտով սպառնում գամփռներին, որոնք պոչները տակը դրած հանգիստ նստել, մեզ են նայում:

— Դու ընդամենը երկու ամիս դասի նստեցիր:

— Դրանից հետո էլ միշտ հետաքրքրվում էի: Համ էլ մի գյուղում ենք ապրում, հո քաղաքում չե՞նք, որ իրար չճանաչենք:

— Դու քաղաք տեսա՞ծ կա՞ս, Վազգե՛ն:

— Շա՜տ: Որպես առաջավոր հովիվ ուր ասես տարել են: Քեզ էլ կտանեն, որ լավ աշխատես:

— Չէ՛, ես սովորելու եմ գնալու:

Երևի չգիտի, որ ինստիտուտը թողել եմ:

— Վազգե՛ն, ես հիմա ուսանող պետք է լինեի, եթե ինստիտուտում մնայի:

— Գիտեմ, որ թողել ես,— հանգիստ պատասխանում է: Ես այդ հանգստության մեջ ծաղր ու հեգնանք եմ որոնում, չեմ գտնում ու ամաչում եմ իմ կասկածամտությունից:

— Չէի ուզում ինժեներ դառնալ:

— Ճիշտ ես արել: Մարդ պետք է իր ցանկացած բանը դառնա:

— Դու հովվությունը սիրու՞մ ես:

— Շա՜տ: Հլա նայի՛ր: Ազատ, արձակ դաշտեր: Բոլորն իմն են: Էստեղ մարդու սիրտը չի նեղվի, չես կարող վատ բան մտածել: Ոնց որ հանցանք կատարես, եթե հանկարծ չար մտքեր գան գլուխդ: Հա սարե՛րը...

Նրա աչքերը լցվում են սիրով՝ սարերի, այվան ծաղիկների, ուրցահոտ լանջերի, թխպոտ օրերի, շաղոտ կածանների, մայող գառների, մակաղող հոտի:

— Ես էլ եմ որոշել սովորել,— ասում է,— երեկոյան դպրոց եմ հաճախում, եկող տարի կավարտեմ, կգնամ զոովետ ինստիտուտ: Անպայման կսովորեմ,— վրա է բերում հաստատուն տոնով:

— Բա ոչխարնե՞րդ:

— Ես հեռակայելու եմ: Մինչև ինստիտուտ ավարտելը հովիվ կմնամ: Միանգամից զոոտեխնիկ կդառնամ:

Հովիվը զոոտեխնիկ կդառնա, զարմանալու ոչինչ չկա: Իսկ ես՝ հավարածու աստղագետ-մաթեմատիկոս: Ով ուզում է, թող զարմանա: Անպայման կդառնամ: Վազգենի վճռականությունը ոգևորում է ինձ, իմ աչքի առաջ վերափոխվում եմ կարծես, դառնում ուրիշ մարդ:

— Ինչու՞ թողեցիր դպրոցը:

— Ամաչում էի ինձանից չորս-հինգ տարով փոքրերի հետ դասի նստել: Ով տեսնում էր, ասում էր՝ ամոթ չի՞, հլա քո բոյին նայիր, բեղ ու մորուքով տղա ես, գնացել ես երեխեքին խառնվել: Իմ ընկերները տասներորդն էին ավարտում, ես հինգերորդում էի:

Ուրեմն Վազգենն ամաչելուց գյուղը թողել, սարերն է գնացել: Հասկանում եմ քեզ, լավ եմ հասկանում, Վազգեն տղա:

— Բանակ էի ուզում գնալ, չտարան: Ասին՝ առողջությունդ չի ներում, գնա չոբանությունդ արա, գլուխդ սարերի հովում պահիր:

Առաջ նա գունատ էր, քայլում էր օրորվելով: Այժմ նայում եմ նրա լայն ափերի մեջ ամուր սեղմած հովվափայտին և մտածում, որ լեռներն են նրան այսպես դարձրել, նա եթե կամենա հովվափայտով գայլ էլ կսպանի, արջ էլ: Նորից հիշում եմ ուրուրներին, որոնք անհայտ ուղղությամբ իմ խեղճ հավերին տարան, բզկտեցին ու լափեցին: Մտածում եմ, որ վաղը Վազգենը նրանց հախից կգա, կը-

փրկի մեր ֆերման, ինձ կազատի տանջանքներից:

— Ուրուրներին ո՞նց ես սպանելու:

— Հրացանով,— զարմանում է իմ միամիտ հարցի վրա,— հրացանս էշի փալանին կապած է:

Ես նոր եմ նկատում լանջն ի վեր հայտնվող հոտին, գորշացած դաշտերում փռված ոչխարներին ու նրանց ետևից նազանքով քայլող ավանակին:

— Գրքերս էլ են էշի վրա, խուրջինի մեջ: Կարդում եմ, հոգնում, հանգստանում, նորից կարդում:

Իսկ ես մրայն վազում եմ, ճչում, ծղրտում, հավերին կեր տալիս, նորից վազում, նորից ճչում, ծղրտում: Շատ ժամանակ աննպատակ շրջում եմ ձորում, բարձրանում հարթավայր, ցաքուտներից չորացած արմատներ հավաքում վառելու համար:

Հոգուս մեջ ինչ-որ բան է փշրվում, ինչ-որ բան ծնվում, որի անունը չեմ կարողանում գտնել:

— Սոված չե՞ս,— հարցնում է:

— Չէ՛, նոր եմ կերել:

— Ճիշտ չես ասում: Արդեն օրը թեքվել է, էդքան չարչարվել ես, բա ուտել չե՞ս ուզում:

— Չէ՛. ես գնում եմ, հավերին կերակրելու ժամն է:

Վազգենը ժպտում է, ինչպես փոքրիկ երեխային:

— Դու գիտես,— ասում է,— դժվարանալիս մեկ-մեկ ֆերմա կգաս, կօգնես դասերիս:

— Արի՛, երբ կամենաս, միայն ուրուրների վերջը տուր:

Վազելով ետ եմ դառնում: Այնպես եմ ոգևորվում, որ չեմ նկատում ոտքերիս փաթաթվող Դեղնուկին:

— Ու՞ր էիր կորել, գամփռները քեզ գզեցի՞ն,— կանգնում եմ, շոշափում շան մեջքը, ոտքերը, գլուխը, փորատակը,— չէ՛, լավ ես պրծել, ճիշտ ես արել, որ փախել ես:

Դեղնուկը կարծես կարոտել է ինձ, փաթաթվում է ոտքերիս, խանգարում քայլել:

— Դե որ չես ուզում քայլենք, արի նստե՛նք, Դեղնու՛կ ջան: Նստենք, մի քիչ զրուցենք:

Նստում եմ պատահած մեծ քարին, ոտքերիս տակ տեղ բացում Դեղնուկի համար: Նա կլանչում է, կլանչելով երկու անգամ պտտվում շուրջըս, հետո նստում ոտքերիս մոտ ու նայում ինձ: Ես շոյում եմ ցից-ցից ականջները, խելացի աչքերը և կամաց խոսում:

— Դեղնու՛կ, դու Վազգենին ճանաչու՞մ ես: Նրա գամփռներն էին քեզ վախեցրել: Նա միակ մարդն էր, որ հասկացավ ինձ ու արդարացրեց ինստիտուտը թողնելս: Նա ինձ հիշում էր դպրոցից, երբ փոքրիկ աղջիկ էի, ծիծաղկոտ ու խենթ, մազերիս ժապավեն էի կապում, վզիս՝ պիոներական փողկապ: Դու ինձ այդպես չես տեսել: Եվ չգիտես, որ դպրոցական հավաքույթների ու միջոցառումների ոգին էի: Սիրում էի պարել, կատակել, արտասանել, բոլորին գլխիս հավաքել ու զվարճացնել: Բայց ամենից շատ սիրում էի պարտաճանաչորեն կատարել տրված հանձնարարությունները, դրա համար որքան էլ որ չարություն էի անում, ուսուցիչներն ինձ սիրում էին ու ներում: Իսկ ես վատ ու հիմար բաներ չէի անում: Օգնում էի ընկերներիս խնդիրներ լուծելիս, դասերին ներկայանում էի ճիշտ ժամանակին, դասարանի անփոփոխ ավագն էի, երբ մի քիչ ավելի մեծացա, ընտրեցին դպրոցի կոմերիտական կազմակերպության քարտուղար: Կենսաբանությունից և աշխարհագրությունից եթե չորս չունենայի և մեդալ ստանայի, գուցե չխալվեի ու քայլերս ինձ պոլիտեխնիկ չտանեին: Ընդունվեցի, բայց որ սիրտս էլ տաք՝ չէր այդ ինստիտուտի վրա, ինչու՞ հինգ տարի այնտեղ կորցնեի, հետո էլ ամբողջ կյանքում չսիրած գործի վրա կյանքս մաշեի: Եկող տարի քննություններ կտամ, կընդունվեմ իմ սիրած ճյուղը:

Ծնծղուկների երամը աղմկելով ընստում է կողքի ցաքուտին: Դեղնուկը վեր է թռչում ու հարձակվում: Սարսափահար թռչունները աղմուկն ավելի են շատացնում և ավելի հեռուն չվում:

*(Շարունակելի)*

# ԴԱՎԻԹ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Ցատկաշտարակին նորից հայտնվում է Դավիթ Համբարձումյանը՝ գանգրահեր, ամրակազմ ու գեղեցիկ: Վերջին ցատկն է. խնամքով նախապատրաստվում է, համակ ուշադրություն դառնում և ակնթարթ անց թռչնի նման ճախրում օդում: Լողավազանի կապույտ հայելին փշրվում է, և ջրի ճողփյունն ուղեկցվում է հանդիսականների հիացմունքի բացականչություններով: Գեղեցիկ, անթերի ցատկ, որը հայ ջրացատկորդին բերում է Եվրոպայի չեմպիոնի կոչում:

Երևանցի դինամոյական Դավիթ Համբարձումյանը երկար էր սպասել այս օրվան: Ամեն անգամ, չնայած կայուն մրցելույթներին, ինչ-որ բան խանգարում էր Դավթին ուժեղների մեջ ուժեղագույնը լինել: Եվ ահա, վերջապես, Հարավսլավիայի Սպլիտ քաղաքի լողավազանի ջուրը «ոսկեզօծեց» նրան: Այս հաջողությանը վաղուց էին սպասում և՛ անվանի մարզիկի երկրպագուները, և՛, իհարկե, նրա մարզիչ Վ. Կուվշինկինը, որը Եվրոպայի առաջնություն մեկնելուց առաջ համոզված ասաց. «Այս անգամ, կարծում եմ, Դավիթը չի վրիպի...»:

Արդեն տասներկու տարի է, որ Դ. Համբարձումյանն իր ուժերն է չափում միութենական և միջազգային բարձր մակարդակի մրցումներում: 13-ամյա պատանու առաջին իսկ մրցելույթները մասնագետների հավանությանն արժանացան: Նա սկսեց մարզվել ավելի համառորեն ու ջանադիր՝ աստիճանաբար հղկելով ու սլացիկ դարձնելով ցատկերը: Եվ հաջողությունները չուշացան: Սովետական Միության 11-ակի չեմպիոն, բազմաթիվ մրցաշարերի հաղթող ու մրցանակակիր, երեք օլիմպիադաների մասնակից, որտեղ գրավել է 7-րդ, 5-րդ և 3-րդ տեղերը: Վերջին ցուցանիշին նա հասավ Մոսկովյան օլիմպիադայում, այստեղ նվաճած բրոնզե մեդալը նոր լիցք ու վստահություն հաղորդեց հայ մարզիկին:

Եվ ահա Եվրոպայի հերթական առաջնությունը, 1981 թվականի աշուն, Սպլիտ, թեժ մրցապայքար՝ 10 մետրանոց աշտարակացատկերում...

Եվրոպայի նորընծա չեմպիոնը՝ 25-ամյա Դավիթ Համբարձումյանը շարունակում է մարզումները, նախապատրաստվելով գալիք մեկնարկներին: Մի ժամանակ փոքրիկ Դավիթը ուներ ջրացատկի իր կուռքերն ու նրանց նմանվելու անկոտրում ձգտումներ: Այժմ ինքն է դարձել շատ պատանիների կուռքը: Նրա մրցելույթներին ուշի-ուշով հետևում և նրա հետքերով երազում են քայլել լողավազանների աշտարակներից առաջին ցատկերը կատարող շատ ու շատ երեխաներ:




## ՄԻՋՈՑՆԵՐԸ ԹՈՒՅԼ ՉԵՆ ՏԱԼԻՍ

Սաշա Բալտրուվեյտն ապրում է արևմտագերմանական Բոտրոպ քաղաքում: Նա առաջին դասարանցի է: Նրա մայրիկը «Ունզերե ցայտ» թերթի թղթակցին ցույց տվեց ապրանքների մի երկար ցուցակ, որոնք անհրաժեշտ էր եղել գնել՝ տղային դպրոց ուղարկելու համար:

Պայուսակ՝ 50 մարկ (15 ռ.), գըրչատուփ՝ 20 մարկ (8 ռ.), կավիճներ, ֆլոմաստերներ, նկարչական ալբոմ, տետրեր՝ 60 մարկ (18 ռ.), և այլն: Բոլոր անհրաժեշտ պիտույքների համար, չհաշված դասագրքերը, հարկավոր է ծախսել մոտավորապես 90 ռուբլի: Ահա թե դպրոցական առաջին օրը ինչ է նստում ԳՖՀ-ի հասարակ ընտանիքին:

Իտալական կոմունիստների «Ունիտա» թերթը սեպտեմբերի 17-ին սկըսված նոր ուսումնական տարվա նախօրյակին հաղորդեց, որ երկրի հարավի երեխաների 20 տոկոսը դպրոց չգնաց: Պատճառներից մեկը՝ դպրոցական դասագրքերի, պիտույքների, դպրոցական համազգեստի թանկ գներն են:

«Եթե մեր Մասսաչուսետս նահանգի դպրոցներում գործերն այսուհետև էլ այսպես ընթանան,— գրում է «Քրիսչեն սայենս մոնիտոր» թերթը,— մենք կդառնանք անգրագետ երիտասարդների նահանգ»:



**Այս տարի Ռիգայում, Տուլայում, Երևանում տեղի ունեցան «Կաշվե գընդակ» համամիութենական ֆուտբոլային ավանդական մրցաշարեր (տարբեր տարիքի): Բոլոր երեք խմբերում չեմպիոնների ոսկե մեդալները նվաճեցին հայ ֆուտբոլիստները: Խմբագրության առաջարկով՝ նրանց մասին պատմում է Երևանի ֆուտբոլի ֆեդերացիայի նախագահի տեղակալ, ֆուտբոլասերների ակումբի նախագահ, բանաստեղծ Արամայիս Սահակյանը:**

### 1.

Մարդիկ ինչու՞ են սիրում ֆուտբոլ: Մոգական ի՞նչ ուժ ունի այն, որ դարձել է ամենաժողովրդական, ամենասիրված, ամենահետաքրքիր խաղն աշխարհում: Ճիշտ են ասել, որ մեծահասակներն այդ խաղը դիտելիս վերապրում են իրենց մանկությունը, չէ՞ որ համարյա ամեն մանուկ հրապուրվել է ֆուտբոլով: Ուրեմն՝ մեծերի համար «մի կտոր մանկություն» է այն: Իսկ ընդհանրապես՝ հետաքրքիր է տեսնել ընդարձակ և կանաչ դաշտ, ուր քո կամ ուրիշ երկրի երիտասարդ տղաները ցուցադրում են... չգրված ներկայացում, և դու երբեք չես կարող ասել, թե ինչ կկատարվի հաջորդ վայրկյանին, ինչպես կավարտվի խաղը, ինչ հնարամտություն, ուժ, կամք և ճարպկություն կցուցաբերեն ֆուտբոլիստները: Գոլը համարվում է «փոքրիկ հրաշք»: Այն ոտքի է կանգնեցնում ու երջանկության պահ պարգևում դիտողներին: Մարդիկ համբուրում են իրար: Թվում է՝ առանձնապես ոչինչ էլ չկա՝ կաշվե կլոր գնդակը մտել է ցանց: Ի՞նչ անենք: Տիեզերք մտած հրթիռ հո չէ՞, ոչ էլ նոր շենքերի կառուցում: Բայց ոչ: Սա արվեստ է: Ուժ:

## «Կաշվե գնդակ»-81



# ԲՈԼՈՐ ՉԵՄՊԻՈՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻՑ

«Կաշվե գնդակ»-81 «Կաշվե գնդակ»-81

Գեղեցկություն: Լավ ֆուտբոլը բարձրացնում է տիեզերագնացի եռանդը, շինարարին ուժ է տալիս, մտավորականին՝ ոգևորություն: Լավ ֆուտբոլը կարող է ամբողջ ժողովրդի տրամադրությունը բարձրացնել, վատ ֆուտբոլը՝ գցել: Ի վերջո՝ մարզադաշտն այն տեղն է, ուր մարդիկ ավելի միասնական են դառնում, բոլորով նույն բանն են ուզում, միասին ցավում, միասին հրճվում, միասին... հաղթում կամ պարտվում: Ֆուտբոլի աշխարհի վերջին առաջնության՝ Արգենտինա-Բրազիլիա խաղը դիտելու համար մի ֆուտբոլասեր իր շքեղ «Մերսեդեսը» փոխել է... մեկ տոմսով: Նույն Բրազիլիայում հանրահայտ «Մարակոննա» մարզադաշտը նախատեսված է 200 հազար մարդու համար: Իսկ Էրեշիմ քաղաքում կառուցվել է 45 հազարանոց ֆուտբոլի մարզադաշտ, երբ քաղաքի բնակչության թիվը... 30 հազար է:

Արտասահմանցի մի լրագրող աշխարհի առաջնության խաղերից մեկի մասին (0:0) շտապ հաշվետվություն է ուղարկում իր երկիրը մի հեռագրով, որը վեց ժամ է խլում կապի աշխատողներից և բաղկացած է եղել 20 հազար բառից: Երբ նրան փորձում են հանդիմանել, զարմանում է. «Չէ՞ որ ֆուտբոլի մասին է...» Այո՛, ֆուտբոլի նկատմամբ սերը տարիք չի ճանաչում: Հիշենք, թե համաժողովրդական ինչպիսի՜ ցնծություն էր Հայաստանում, երբ հայ ֆուտբոլիստները 1973 թվականին դարձան Սովետական Միության ֆուտբոլի գավաթակիրներ և չեմպիոններ:

Առաջին գոլը բարձրագույն խմբում հայ ֆուտբոլիստները խփել են 1949 թվի ապրիլի 24-ին...

Անմոռաց անուններ է տվել հայկական ֆուտբոլը՝ Ջատիկյան, Չալիկյան, Կարմիրյան, Դուրգարյան, Քեհեյան, Սուփրիկյան, Սեմերջյան, Հովիվյան, Անդրեասյան, Մարգարով, Ջանազանյան, Իշտոյան, Ղազարյան, Աբրահամյան և ուրիշներ: Վերջին տարիների լավագույն ֆուտբոլիստներից է Խորեն Հովհաննիսյանը, որն իր գոլերի թվով առայժմ 4-րդ տեղն է գրավում հայկական ֆուտբոլի պատմության մեջ (Ղազարյանից, Անդրեասյանից և Ջանազանյանից հետո): Էդվարդ Մարգարովը «Արարատի» կազմում խփել է 41 գնդակ, իսկ ընդհանրապես՝ հարյուրից ավելի: Մինչև հիմա էլ սովետական ֆուտբոլիստներից ոչ մեկին չի հաջողվել գերազանցել Նիկիտա Սիմոնյանի եզակի ռեկորդը՝ մեկ խաղաշրջանում՝ 34 գոլ: Թեև սա էլ, իհարկե, շատ չէ: Համեմատության համար ասեմ, որ լեգենդար Պելեն մեկ խաղաշրջանում խփել է... 127 գոլ:

Խորեն Հովհաննիսյանը Սովետական Միության ֆուտբոլի հավաքականի լավագույն խաղացողներից է: Խորեն Հովհաննիսյանը, Վլադիմիր Գուցաևը, Վալերի Գազաևը, Վիտալի Դարասելիան, ինչպես նաև... հոկեյի հանրահայտ դարպասապահ Վլադիսլավ Տրետյակն իրենց մարզական կյանքն սկսել են «Կաշվե գնդակ» մրցումներից: Այդ մրցաշարը հիմնադրվել է 1964 թվին, ՀամԼԿԵՄ Կենտկոմի և «Պիոներսկայա պրավդա» թերթի նախաձեռնությամբ: Նպատակն է՝ ի հայտ բերել նոր ֆուտբոլիստներ, ուժեղացնել կոլեկտիվիզմի և բարեկամության զգացումը: Հայ պատանի ֆուտբոլիստները տասն անգամ չեմպիոններ են դարձել. «Անի», «Էրեբունի—2750»,

«Մասիս», «Կայծ», «Արարատ», «Շիրակ», «Գյումրի», «Հայաստան—60», «Քիմիկ» և կրկին «Գյումրի» թիմերը: Ցավոք, միշտ չէ, որ այդ հրաշալի պատանիները հետագայում տեղ են գրավել «Արարատ» թիմում: Այլապես այսօրվա «Արարատը» ավելի լավ վիճակում կլիներ: Մասնագետների վկայությամբ պատանիները խաղում են ավելի ոգևորված, ավելի գեղեցիկ, ավելի նվիրված, քան վարպետ թիմերի որոշ խաղացողներ: Ես նույնպես ներկա եմ եղել պատանիների խաղերին և վկայում եմ նույնը: Ինձ հետաքրքրեց նաև, թե ինչպիսի պատանիներ են չեմպիոնները, անձամբ հանդիպեցի և զրուցեցի Երևանի Սովետական շրջանի «Հայաստան—60» թիմի պատանիների հետ:

Ահա այդ զրույցը:

2.

— Շնորհավորում եմ ձեզ՝ չեմպիոններ դառնալու առթիվ: Բայց առաջին հարցս պետք է վերաբերի ոչ թե ձեզ, այլ... «Գյումրի» և «Քիմիկ» թիմերին: Ի՞նչ կասեք նրանց մասին:

— Ուրախ ենք, որ Ռիգայում և Տուլայում նույնպես հաղթեցին հայ փուտբոլիստները,— պատասխանեց թիմի ավագ Արմեն Հովսեփյանը, որն արտաքինով բոլորից կրտսեր է երևում,— հատկապես հետաքրքիր է եղել Կիրովականի «Քիմիկ»-ի եզրափակիչ հանդիպումը կանանցիների հետ: Առաջին խաղակեսում մերոնք պարտվել են 3:0, երկրորդ խաղակեսում հաղթել 4:3 հաշվով:

— Որևէ փուտբոլիստի անուն գիտե՞ք:

— Իհարկե, «Քիմիկ» թիմում աչքի է ընկել Լևոն Անդրեասյանը: Այնպես որ՝ մի Անդրեասյան էլ կունենա հայ փուտբոլը:

— «Գյումրի» թիմի մասին ի՞նչ կասեք:

— Լենինականի պատանի փուտբոլիստները լավ են խաղում,— պատասխանեց դարպասապահ Հայկ Ավետիսյանը:— Ես իմացա, որ Լենինականում կա 130 մանկական թիմ: Դրա համար էլ «Գյումրին» միշտ մրցանակներ է շահում:

— Դուք հաղթեցիք «Վանին» 1:0 հաշվով: Արդյոք դա քիչ չէ՞ մի թիմի համար, որն ամենաշատ գոլերն է խփել, իսկ նրա հարձակվող Վասիլի Հովհաննիսյանը 14 գոլի հեղինակ է, նույնիսկ մի խաղում՝ 5 գոլի...

— 24 թիմ էր մասնակցում Երևանյան մրցաշարին,— պատասխանեց Վասիլի Հովհաննիսյանը:— Երևան էին ժամանել համարյա բոլոր հանրապետությունների 336 պատանի փուտբոլիստներ: 13 օր պայքար էր գնում առաջին տեղի համար: «Վան» թիմը ուժեղ էր, և մենք հազիվ կարողացանք հաղթել, թեև նախորդ թիմերին հաղթել էինք 7:0, 5:0, 4:0, 4:1 և այլ հաշիվներով: Ընդամենը 1 գնդակ ենք բաց թողել մեր դարպասը:

— Եղա՞ն դեպքեր, որ հատկապես չեք մոռանա,— հարցրի պատանիներին:

— Օրինակ, ես շատ հուզվեցի, երբ Կրասնոդարի տղաները պատմեցին, թե ինչպես են իրենք փուտբոլի դաշտ

ստեղծել, մաքրել, հերկել, կանաչապատել, բայց հետո մեծահասակներն այն դարձրել են... գարաժներ,— ասաց մեկը:

— Իսկ ես չեմ մոռանա, թե ինչպես «Կոլոս» թիմի դարպասապահ Սաշա Ֆեդկոն գնդակ թողեց իր դարպասը, քանի որ այդ պահին հետաքրքրությամբ նայում էր թռչկոտող թիթեռին...— շարունակեց մյուսը:

— Միշտ տխրությամբ կհիշեմ,— ասաց երրորդը,— երբ մրցավարը դաշտից հեռացրեց «Կոկանդ» թիմի խաղացող Յուրա Վիրպոլոյին՝ իրեն անվայել պահելու համար: Երբ էքսկուրսիա գնացինք Սևան, նա ինձ ասաց. «Դա մեծ դաս էր ինձ համար...»

— Իսկ ես ուրախությամբ կհիշեմ, որ ծանոթացանք լավ տղաների հետ,— ասաց չորրորդը,— այժմ համարյա ամեն հանրապետությունում ընկերներ ունենք, նամակներ ենք գրում:

— Երբ 4:0 հաշվով հաղթեցինք Ռուսթավիի «Փոլադին», խաղից հետո վրաց ֆուտբոլիստները խռովել էին մեզնից,— պատմեց Երվանդ Սուքիասյանը,— բայց մի ժամ չանցած՝ նորից մտերմացան ու երգեցին մեզ հետ:

— Իսկ ինձ շատ դուր եկան Լենինգրադի «Մոտոր» թիմի պատանիները,— ասաց Անդրանիկը,— նրանք ուշացումով հասան Երևան, չմասնակցեցին առաջին խաղին, և պարտություն գրանցվեց նրանց: Բայց տղաները համախմբվեցին և հետագա խաղերը անցկացրին լավ:

— Ինչպե՞ս ընդունեցին ձեր հաղթանակը 139-րդ դպրոցում, որտեղ սովորում եք, և այն շենքում, որտեղ ապրում եք,— հարցրի ես:

— Ջերմորեն ընդունեցին,— պատասխանեց Երվանդը,— բոլորն էլ փոխել են իրենց վերաբերմունքը: Առաջ, երբ խաղում էինք բակում, շատերն էին դժգոհում, իսկ հիմա՝ ընդհակառակը: Առաջ մեր դասարանի աղջիկները չէին թողնում արտագրենք մաթեմատիկայի գրավորը, իսկ հիմա՝ իրենք են խնդրում...

— Բայց, որքան հայտնի է ինձ, բոլորդ էլ լավ եք սովորում,— զարմացա ես:

— Կատակ եմ անում,— ժպտաց Երվանդը:— Մի՞թե այդքան հպարտություն չունենք, որ մեզ թույլ տանք արտագրել:

— Պատահե՞լ է, որ վախեցել եք խաղից առաջ:

— Մի անգամ, բայց՝ կարճ: Հենց վախենանք, կպարտվենք,— ասաց Արմենը:

— Շատ ինքնավստահ լինելն էլ լավ չէ,— առարկեց Հենրիկը,— մենք միշտ հաշվի էինք առնում մրցակցի ուժը, մեզ համոզում էինք, որ թույլ թիմեր չկան:

— Իսկ պարտվելիս ի՞նչ եք զգում:

— Պարտվելի՞ս...— զարմացան տղաները,— ախր չենք պարտվել, որ իմանանք...

Ես մաղթեցի նրանց՝ երբեք չիմանալ, թե ինչ է պարտությունը: Ապագայում բոլորն էլ կդառնա՞ն, արդյոք, ֆուտբոլիստներ, դժվար է ասել: Բայց որ համարձակ են, ուժեղ, ընկերասեր, մարդասեր, պարզ է և ուրախալի: Կըրկին մնում է ցանկանալ, որ նրանցից լավագույնները ապագայում տեղ գրավեն վարպետ թիմերի կազմում, համալրեն «Արարատը»:




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱ-
ԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-35, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 1 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1982



Շապիկի առաջին էջը՝
ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



Հանձնված է արտադրության 1.12.81 թ.։ Ստորագրված է տպագրության 10.02.1982 թ.։ ՎՖ 08642։ Թուղթ օֆսեթ, 70×100[1]/16: Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 65852։ Պատ. 2588։ Գինը՝ 15 կ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2։

Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.

ՎՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# Առվակ

Ջրաշուշանն ասաց առվին.
— Վռազ-վռազ ու՞ր ես գնում,
Ու՞ր ես վազում կլոր տարին,
Ոչ մի րոպե կանգ չես առնում:
— Թե որ կանգնեմ,—
Առվակն ասաց,—
Կկորցնեմ կարկաչն իմ ջինջ
Ու հանդերին դեռ չհասած,
Կդառնամ ես հոտած ճահիճ:

# Վեճը

— Ո՞վ է տեսել դեռ էսպես բան,—
Բողոքեցին պատերը տան,—
Ո՛վ առաստաղ,
Ի՞նչ ես անում,
Մեր հոգին ես անվերջ հանում,
Ճնշում ես մեզ գիշեր ու զօր՝
Էդ ծանրությամբ քո ահավոր...
— Ճնշում եմ ձեզ,
Ճիշտ եք ասում,—
Բայց տապալվեմ թե ես հանկարծ,
Ձե՛ր բաց գլխին կիջնի իսկույն
Ծանթ ու կայծակ,
Անձրև ու ձյուն,
Ու կլինեք դուք ավերակ
Բվերի բույն,
Ոչ թե շքեղ, բարձրիկ մի տուն:






## ԲԱՌԱ-ՇՂԹԱ—ԳԱՂՏ-ՆԱ-ԳԻՐ

1. Կղզի, որը նոր տարվա առաջին դիմավորողն է ՍՍՀՄ-ում: 2. Քիմիական էլեմենտ: 3 Հայոց հին տոմարի առաջին ամիսը: 4. Սպորտային զույգ: 5. Քաղաք ՍՍՀՄ ամենահարավային մասում: 6. Թռչուն: 7. Փոքր մոլորակ, որը հայտնաբերել է ամերիկացի աստղագետ Ու. Բաադեն: 8. Ժամանակի միավոր: 9. Թռչունների թռչող խումբ: 10. Տարվա ամիս: 11. Միրգ: 12. Մթնոլորտային տեղում: 13. Գետ Աֆրիկայում: 14. Երաժշտական գործիք: 15. Հովհ. Թումանյանի հերոսներից: 16. Երաժշտական նոտա: 17. Ծառատեսակ: 18. Պետություն Եվրոպայում: 19. Մայր ցամաք: 20. Տարվա եղանակ: 21. Ժյուլ Վեռնի «80.000 մղոն ջրի տակ» վեպի հերոսներից: 22. Կենդանի: 23. Պետություն, որտեղ նոր տարին դիմավորում են թնդանոթների և հրացանների համազարկերով: 24. Շախմատի ֆիգուր: 25. Լեռնագագաթ մեծ Կովկասի լեռնաշղթայում: 26. Թռչուն: 27. Կանոնավոր բազմանիստ ֆիգուր: 28. Տարվա ամիս:

Գծագրի վանդակներում եղած փոքրիկ փաթիլները բանալի են, որոնց օգնությամբ, բառաշղթան ճիշտ լուծելուց հետո, կկարդաք Ձմեռ պապի նոր տարվա ողջույնը:

*Կազմեց ՅՈԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԸ*

## № 12 ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ 1981



ՍՈԽԱԿ

ԱՐԱԳԻԼԸ